Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


էջ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ: *(Նյութեր զեկուցումների և զրույցների համար)* . . 1

ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԸՆՏՐԱԿԱՆ ԿԱՄՊԱՆԻԱՅՈՒՄ . . . . . . . 39

Օգտագործիր զրույցի ժամանակ

ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԵՐԿՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ . . 45

ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ ՈՒ ՀԶՈՐԱՆՈՒՄ Է ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ . . . . . . 53

Օգնություն ագիտատորներին

ԹԵՄԱՆԵՐ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ 60

ՆՈՐ ԳՐՔԵՐ . . . . . . . 64


---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։*


---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## (Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

*Երեսուներեք տարի առաջ՝ 1917 թվի նոյեմբերի 7-ին, մեր երկրի բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությունը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, Լենինի և Ստալինի առաջնորդությամբ տապալեցին կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը և աշխարհի մեկ վեցերորդ մասում ստեղծեցին սոցիալիզմի առաջին երկիրը։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկային հասարակության պատմության մեջ բաց արեց նոր դարագլուխ, սոցիալիստական ռևոլյուցիաների դարագլուխը, նա հիմք դրեց մի այնպիսի հասարակության, ուր բացակայում է մարդու կողմից մարդու շահագործումը, ուր չկան հակամարտ դասակարգեր։*

*ՍՍՌՄ-ում լենինյան-ստալինյան ազգա-*

յին քաղաքականության — շնորհիվ առաջին անգամ հաստատված է ժողովուրդների խակական բարեկամություն, որը սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկն է։

«Հոկտեմբերյան ռևոլյուցիան,— ասում է ընկեր Ստալինը,— «ազգային շրջանակներով» ռևոլյուցիա չէ միայն։ Նա, ամենից առաջ, ինտերնացիոնալ, համաշխարհային կարգի ռևոլյուցիա է, որովհետև նա մարդկության համաշխարհային պատմության մեջ արմատական շրջադարձ է նշանակում՝ հին, կապիտալիստական աշխարհից դեպի նոր, սոցիալիստական աշխարհը»։

Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում և միջազգային կյանքում տեղի ունեցած փոփոխությունները ամենայն պարզությամբ ցույց են տալիս, որ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հանդիսանում է համաշխարհային ռևոլյուցիայի սկիզբ և նախադրյալ։ Սոցիալիզմի առաջին երկրի՝ Սովետական Մեծ Միության հզորացումն ու ամրապնդումը դրա փայլուն գրավականն է։

Այժմ Սովետական Միության օրինակով սոցիալիզմի ուղին են բռնել Եվրոպայում և Ասիայում մի շարք երկրներ։ «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան,—



ասում է ընկեր Վ. Մոլոտովը,— բացել է ժողովուրդների աչքերը այն բանի հանդեպ, որ կապիտալիզմի դարաշրջանը մոտ է իր վախճանին և որ հուսալի ուղիներ են բացվել ընդհանուր խաղաղության և ժողովուրդների մեծ առաջադիմության համար։ Իմպերիալիստների ջղաձգական ճիգերը, որոնց ոտքի տակ հողը երերում է, չեն փրկի կապիտալիզմը մոտալուտ կործանումից։ Մենք ապրում ենք այնպիսի դարում, երբ բոլոր ուղիները տանում են դեպի կոմունիզմ»։

***

Բոլշևիկների պարտիան կազմակերպեց ու ղեկավարեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում։ Սովետական ժողովուրդը, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, պատմական շատ կարճ ժամանակաշրջանում արմատապես փոխեց մեր երկրի դեմքը։ Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքով մեր երկիրը հետամնաց ագրարային երկրից վերածվեց հզոր ինդուստրիալ-կոլխոզային տերության, որը այժմ թևակոխել է իր զարգացման նոր շրջանը— սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը։

Պատերազմի հաղթական ավարտումից հետո, 1946 թ. փետրվարի 9-ին, Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում արտասանած իր պատմական ճառում, ընկեր Ստալինը ուրվագծեց ժողովրդական տնտեսության հետպատերազմյան զարգացման վիթխարի ծրագիրը: Ընկեր Ստալինը բնորոշեց մոտ ապագայի համար կոմունիստական պարտիայի աշխատանքի հիմնական խնդիրները և տվեց ավելի երկարատև ժամանակաշրջանի տնտեսական կոնկրետ ծրագիրը՝ մեր երկրում կոմունիզմի նյութական հզոր բազայի ստեղծման ծրագիրը:

Անցած տարիները նշանավորվեցին հսկայական հաղթանակներով Սովետական Միության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: 1948 թվին մեր արդյունաբերությունը ոչ միայն հասավ, այլև գերազանցեց նախապատերազմյան՝ 1940 թվի մակարդակը, իսկ 1949 թվին սովետական ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը գերազանցեց 1940 թվի մակարդակը՝ 41 տոկոսով: Անցյալ տարվա չորրորդ եռամսյակի համախառն արտադրանքի միջին ամսական թողարկումը բարձր էր նախապատերազմյա-



նից 53 տոկոսով: Այս տարվա 9 ամիսների արդյունաբերական արտադրության պլանը նույնպես գերակատարված է:

Հնգամյակի անցած միայն չորս տարիների ընթացքում շարք են մտել ավելի քան 5.200 պետական ձեռնարկություն, չհաշված կոոպերատիվ ձեռնարկությունները: Այդ նշանակում է, որ միջին հաշվով յուրաքանչյուր յոթը ժամում գործարկվել է նոր ստեղծված, կամ վերականգնված, մեկ պետական խոշոր արդյունաբերական ձեռնարկություն: 1949 թվականին հազարավոր ձեռնարկություններ ժամկետից շուտ կատարեցին իրենց հնգամյա պլանները: Մոսկվա քաղաքի արդյունաբերությունը չորս տարուց դեռ պակաս ժամանակամիջոցում կատարեց հետպատերազմյան հնգամյակը՝ համախառն արտադրանքի թողարկման գծով:

Սև մետալուրգիայի գծով գլանված մետաղի արտադրությունը 1949 թվի 4-րդ եռամսյակում գերազանցեց 1940 թվականի մակարդակը 47 տոկոսով, իսկ պողպատի ձուլումը՝ 37 տոկոսով: Նշանակալից չափով ավելացել է նաև գունավոր մետաղների արտադրությունը: Ածխի արդյունաբերությունը անցյալ տարվա 4-րդ եռամսյակում հասավ հնգամյա պլանով 1950 թվականի համար սահման-

ված մակարդակին, նավթի հանույթը այդ նույն ժամանակամիջոցում 16 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը գերազանցեց այդ մակարդակը 62 տոկոսով։

Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ զգալի չափով ավելացել է մեքենաների ու սարքավորումների թողարկումը։ 1949 թվականին գրեթե երեք անգամ ավելի շատ տրակտոր է բաց թողնվել, քան 1940 թվականին, ավտոմոբիլներ՝ երկու անգամ, կոմբայններ՝ երկու և կես անգամ, մետալուրգիական սարքավորում ավելի քան չորս ու կես անգամ, էլեկտրոմոտորներ՝ երկու և կես անգամ, էքսկավատորներ՝ տասն անգամ ավելի։ Զգալիորեն աճել է շոգեքարշերի, շոգեքարշերի, վագոնների և այլ սարքավորումների արտադրությունը։ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել նաև քիմիական, անտառային, շինանյութերի, սննդի, թեթև արդյունաբերության և արտադրության այլ ճյուղերում։ Հնգամյակի ընթացքում զգալի չափով ավելացել է մասսայական սպառման ապրանքների արտադրությունը։

Արտադրողական ուժերի այդպիսի չտեսնված վերելքը հատուկ է միայն տնտեսու-



թյան սոցիալիստական սիստեմին, որն ազատ է ճգնաժամերից, գործազրկությունից և մասսաների շահագործումից։ Մեր ձեռնարկություններում արագ տեմպով արմատավորվում է նոր, առաջավոր տեխնիկան, լայն չափերով իրագործվում է աշխատատար ու ծանր աշխատանքների մեքենայացումը, արտադրության պրոցեսների ավտոմատացումը։

Միայն 1949 թվին մեր հայրենական արդյունաբերությունը ստեղծել և սերիական արտադրության է հանձնել բարձր արտադրողական մեքենաների և մեխանիզմների ավելի քան 300 կարևորագույն նոր կոնստրուկցիաներ։ 1949 թվին ածխի արդյունահանման ստորերկրյա այնպիսի կարևորագույն պրոցեսներ, ինչպիսիք են ածխահանումը, ածխահատումը և դուրս բերելը, մեքենայացվեցին 98,1 տոկոսով։ Ածխային արդյունաբերության մեջ հաջողությամբ կիրառվում են ածխային կոմբայններ, մեքենաներ, որոնք միաժամանակ ածուխը հատում են, դուրս են բերում և լցնում են կոնվեյերների վրա։ Անտառային տնտեսության մեջ կիրառվում են նոր տիպի էլեկտրասղոցներ։

Սովետական սոցիալիստական հասարակարգի պայմաններում տեխնիկական ան-

ընդհատ պրոգրեսի հնարավորությունները անսահմանափակ են։ Դա հանդիսանում է դեպի կոմունիզմ մեր հաջող առաջընթացի կարևորագույն պայմաններից մեկը։

Միանգամայն հակառակ պատկեր է ներկայացնում իրենից կապիտալիստական աշխարհը, որ խճճվել է անլուծելի հակասությունների մեջ։ Կապիտալիստական երկրները գնալով ավելի խորն են սուզվում աճող տնտեսական ճգնաժամի ոլորապտույտում։ Միմիայն վերջին տարում Ամերիկայի Միացյալ Նահանգներում արտադրությունն ընկել է 22 տոկոսով, գնալով աճում է գործազուրկների և կիսագործազուրկների թիվը։ Բանվոր դասակարգին խեղդում են կարիքն ու գործազրկությունը, քայքայվում են միլիոնավոր ֆերմերներ և միևնույն ժամանակ շարունակում են աճել խոշոր կապիտալիստների շահույթները։ Այդպես է դրությունը նաև կապիտալիստական մյուս երկրներում՝ Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում։

Սովետական Միությունը ամբողջ աշխարհի աշխատավորներին ակնառու կերպով ցույց է տալիս սոցիալիստական սիստեմի մեծ առավելությունները կապիտալիստականի համեմատությամբ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից ընդուն-



ված 1950 թվականի պետական բյուջեն նախատեսում է խոշոր հատկացումներ արդյունաբերության զարգացման համար։ Համաձայն Պետական բյուջեի՝ 1950 թվականին արդյունաբերության մեջ ներդրվելու է 85,2 միլիարդ ռուբլի։ Այդ միջոցների հիմնական մասը ծախսվելու է նոր կապիտալ շինարարության համար։ Դա նշանակում է, որ 1950 թվականին շարք են մտնում Սովետական Միության նոր հզոր գործարաններ, ֆաբրիկաներ, հանքահորեր, էլեկտրակայաններ։ Մեր երկրի արդյունաբերության զարգացման արագ տեմպերն ապահովվում են մասսաների աշխատանքային հզոր վերելքով, սոցիալիստական մրցության և ստախանովյան շարժման նոր թափով։ Հետպատերազմյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ նոր ուժով դրսևորվեց սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը, նրանց անսահման նվիրվածությունը Սոցիալիստական Հայրենիքին, բոլշևիկյան պարտիային և ընկեր Ստալինին։

Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իսկապես,

խավրական մասսայական, բնակչության մե-
ծամասնության, ապա նաև ամբողջ բնակ-
չության մասնակցությամբ տեղի ունեցող
առաջընթաց շարժումը հասարակական
ու անձնական կյանքի բոլոր ասպարեզնե-
րում: Դեպի կոմունիզմ մեր երկրի առաջըն-
թաց շարժումը տեղի է ունենում երկրի ամ-
բողջ բնակչության ակտիվ մասնակցու-
թյամբ, ստեղծագործ աշխատանքով, որին
ուժ և ուղղություն է տալիս բոլշևիկյան պար-
տիան:

Մեր արդյունաբերության մեջ, արտադրու-
թյան բոլոր ճյուղերում օրավուր ծավալվում
են նորանոր հայրենասիրական նախաձեռ-
նություններ: Առաջավոր խառատներ,
Ստալինյան մրցանակի լաուրեատներ
Պավել Բիկովի և Հենրիխ Բորտկևի-
չի նախաձեռնությամբ սկսված արագա-
գործների շարժումն ապահովեց աշխատանքի.
արտադրողականության խիստ բարձրացու-
մը մետաղի մշակման գործում, Ա. Զուտկի-
խի նախաձեռնությամբ սկսված շարժումը
արտադրանքի գերազանց որակի համար,
Տրյոխգորնայա մանուֆակտուրայի ֆաբրի-



կայի վարպետ Վ. Վորոշինի հայրենասիրա-
կան նախաձեռնությունը արտադրության մեջ
աշխատանքի բարձր կուլտուրայի ստեղծման
ասպարեզում, Լիդիա Կորաբելնիկովայի և
Ֆեոդոր Կուզնեցովի հիանալի նախաձեռնու-
թյունը, որոնք սկիզբ դրին հումքի և նյութե-
րի կոմպլեքսային խնայողության համար
մասսայական շարժմանը և բազմաթիվ այլ
հայրենասիրական նախաձեռնություններ բը-
նութագրում են սովետական մարդկանց
բարձր ակտիվությունը հետպատերազմյան
ստալինյան հնգամյա պլանը ժամկետից
շուտ կատարելու գործում:

Լենինգրադի գիտնականների նախաձեռ-
նությամբ գիտության և տեխնիկայի գործիչ-
ների մեջ հայրենասիրական հիանալի շար-
ժում ծավալվեց գիտության և արտադրու-
թյան աշխատողների ստեղծագործական հա-
մագործակցության համար:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում
ստախանովյան շարժման ամենաբարձր նվա-
ճումը ստախանովյան կոլեկտիվ աշխատան-
քի համար ծավալված շարժումն է, որն
սկսվեց 1947 թվականին «Կալիբր» գործարա-
նի նորարար, ավագ վարպետ Նիկոլայ Ռոս-
սիյսկու նախաձեռնությամբ: Նախահոկտեմ-
բերյան այս օրերին երկրում լայն ծավալ է

ստացել ինժեներ Ֆեոդոր Կովալևի հրաշալի նախաձեռնությունը, որը վերաբերում է աշխատանքի առաջավոր, առավել պրոգրեսիվ ու արտադրողական մեթոդների գիտական ընդհանրացմանը և այդ մեթոդները բոլոր բանվորներին սովորեցնելուն։

Մեր երկրի հազարավոր գործարաններ ու ֆաբրիկաներ պլանների գերակատարումով են դիմավորում պանծալի տարեդարձը։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձը խոշոր հաջողություններով է դիմավորում մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը։ 1948 թվին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը գրեթե հասավ 1940 թվի մակարդակին։ Իսկ անցած՝ 1949 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 7,6 միլիարդ փութ, այսինքն գերազանցեց 1940 թվի մակարդակը և գրեթե հասավ հնգամյա պլանով 1950 թվականի համար նախատեսված չափերին։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը այս տարի ստացվել է անցյալ տարվա բերքի մակարդակով։ Հետպատերազմյան հնգամյակի չորս տարում ցանքատարածությունը մեր երկրում ավելացել է 25,9 մի-



լիոն հեկտարով։ Հացահատիկային պրոբլեմը այժմ լուծված է։

Հացահատիկային տնտեսության վերելքի ուղղությամբ ձեռք բերած հաջողությունների հիման վրա գյուղատնտեսության աշխատավորները մեծ ոգևորությամբ կենսագործում են բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության կողմից առաջադրված սոցիալիստական անասնաբուծության զարգացման եռամյա պլանը և արդեն զգալի հաջողությունների են հասել այդ բնագավառում։ Կոլխոզներում հանրային մթերատու անասունների՝ խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների, խոզերի գլխաքանակը գերազանցեց նախապատերազմյան լավագույն տարվա մակարդակը։ 1949 թվականի ընթացքում նոր կազմակերպվել են 72 հազար կոլխոզային անասնապահական ֆերմաներ և 42 հազար կոլխոզային թռչնաբուծական ֆերմաներ։

Սոցիալիստական արդյունաբերության հաջողությունները հնարավորություն տվեցին հետպատերազմյան հնգամյակի տարիներին զգալիորեն բարձրացնել գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ 1946—1949 թվերի ընթացքում մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը ստացել է ավելի քան

430 հազար տրակտոր, 48 հազար կոմբայն և
գյուղատնտեսության անհրաժեշտ շատ ու-
րիշ մեքենաներ։ 1949 թվին մեր սոցիալիս-
տական գյուղատնտեսությունը ստացել է
տրակտորներ, ավտոմոբիլներ և գյուղա-
տնտեսական այլ մեքենաներ 3—4 անգամ
ավելի, քան մինչպատերազմյան 1940 թվին։
1950 թվի 9 ամիսների ընթացքում գյուղա-
տնտեսությունն ստացել է 130 հազար տը-
րակտոր։

Մեր սոցիալիստական գյուղատնտեսու-
թյունը հանդիսանում է աշխարհում ամենա-
խոշոր մեքենայացված և առաջավոր գյուղա-
տնտեսությունը։ «Առանց չափազանցության
կարելի է ասել, որ արտադրության տեխնի-
կայի տեսակետից, արդյունաբերության ու
հողագործության՝ նոր տեխնիկայով հագեց-
ված լինելու տեսակետից, մեր երկիրը հան-
դիսանում է ամենից ավելի առաջավորը որևէ
ուրիշ երկրի համեմատությամբ,— ասում է
ընկեր Ստալինը,— որտեղ հին սարքավորու-
մը կախ է ընկել արտադրության ոտքից և
արգելակում է նոր տեխնիկա արմատա-
վորելու գործը»։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1947 թ. Փետրվար-
յան պլենումը պարտիական կազմակերպու-
թյունների հիմնական խնդիրը դարձրեց



կոլխոզների կազմակերպչական-տնտեսական
հետագա ամրապնդման հարցը։ Կոլխոզների
խոշորացումը մի նոր քայլ է սոցիալիստա-
կան գյուղատնտեսության հետագա աճի և
ծավալման, երկրում գյուղատնտեսական
մթերքների առատություն ստեղծելու, սո-
վետական ժողովրդի բարեկեցությունն է՛լ
ավելի բարձրացնելու ճանապարհին։ Խոշոր
արտելային տնտեսությունները առավելա-
գույն հնարավորություններ ունեն մեքենա-
ը արտադրողականորեն օգտագործելու, ա-
ռաջավոր ագրոնոմիական գիտության նո-
րագույն նվաճումները և փորձը արմատա-
վորելու, հողագործության կուլտուրան
բարձրացնելու և հանրային տնտեսությունը
բազմակողմանիորեն զարգացնելու համար։
Սովետական ժողովուրդը հաջողությամբ ի-
րագործում է բարձր և կայուն բերք ապա-
հովելու համար դաշտապաշտպան անտառա-
շերտեր տնկելու, խոտադաշտային ցանքա-
շըրջանառություն կիրառելու և լճակներ ու
ջրամբարներ կառուցելու ստալինյան մեծ
պլանը։

Այն պայմաններում, երբ նոր պատերազ-
մի իմպերիալիստական հրձիգները հորինում
են մարդկությունը բնաջնջելու զառանցական
պլաններ, խաղաղության և դեմոկրատիայի

հուսալի պատվարը հանդիսացող Սովետական Միությունը հաջողությամբ իրագործում է կոմունիստական հասարակության կառուցման ստալինյան հանճարեղ պլանը։ Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը հսկայական գոհունակությամբ դիմավորեց Վոլգայի վրա Կույբիշևյան և Ստալինգրադյան, Դնեպրի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայան կառուցելու, Հարավ-Ուկրաինական ու Հյուսիս-Ղրիմյան և Թուրքմենական Գլխավոր ջրանցքներ կառուցելու մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումները։ Կոմունիզմի այդ հոյակապ կառուցումների լուրը ամբողջ աշխարհի ազնիվ մարդիկ ընդունեցին որպես Սովետական Միության հզոր ուժի, նրա խաղաղասիրական քաղաքականության նոր վառ արտահայտություն։ Վոլգայի վրա կառուցվող՝ Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսությանը տարեկան կտան 20 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը կգերազանցի Իտալիայի, Շվեյցարիայի և Շվեդիայի բոլոր էլեկտրակայանների արտադրական կարողությանը։ Ներկայիս անկենդան անապատներում, որոնք պետք է ոռոգվեն Ամու-Դարիայի ջրերով, կյուրացվեն մեկ միլիոն 300 հազար



հեկտար նոր հողեր, և ջրովի կդարձվեն մոտ յոթ միլիոն հեկտար արոտավայրեր։

***

Բոլշևիկների պարտիան, Սովետական կառավարությունը և անձամբ ընկեր Ստալինը մեծ հոգատարություն են ցուցաբերում մեր ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Եթե սոցիալիզմի զարգացման օրենքը հանդիսանում է մասսաների նյութական-կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը, ապա կապիտալիզմի զարգացման օրենքը հանդիսանում է աղքատության կուտակումը՝ կապիտալի կուտակմանը համապատասխան։ Կապիտալիստական երկրներին յուրահատուկ է գործազրկությունն ու սովը։ ԱՄՆ-ում այժմ հաշվվում է 18 միլիոն գործազուրկ և կիսագործազուրկ։ Կապիտալիստական երկրներում այժմ հաշվվում են ավելի քան 45 միլիոն գործազուրկներ և կիսագործազուրկներ։ Բանվորների կենսամակարդակը ԱՄՆ-ում 1949 թվին, 1940 թվականի համեմատությամբ, ընկել է 25—30 տոկոսով։

Սովետական ժողովրդի նյութական-կուլտուրական դրության բարձրացման փայլուն ապացույց են հանդիսանում լայն սպառման ապրանքների գների երեք իջեցումները և

ազգային եկամտի անընդհատ աճը։ 1949 թվականին, 1948 թվի համեմատությամբ, այն աճեց 17 տոկոսով, իսկ 1940 թվի համեմատությամբ՝ 36 տոկոսով։ ՍՍՌՄ-ի 1950 թվականի պետական բյուջեով Սովետական կառավարությունը աշխատավորների սոցիալ-կուլտուրական կարիքների համար առանձնացրել է ավելի քան 120 միլիարդ ռուբլի։

Այլ է պատկերը կապիտալիստական երկրներում։ ԱՄՆ-ի պետական բյուջեի 76 տոկոսից ավելին ծախսվում է երրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստության համար, պետական բյուջեի միայն 2 տոկոսն է ծախսվում դպրոցների, բուժհիմնարկների բարելավման համար։

***

Ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման փայլուն ապացույց է մեր երկրում լայնորեն ծավալվող բնակարանային շինարարությունը։ Հնգամյակի միայն չորս տարիների ընթացքում վերականգնված, կառուցված և գործածության մեջ է մտցված ավելի քան 72 միլոն քառակուսի մետր բնակելի տարածություն, գյուղական վայրերում կառուցված ու վերականգնված է 2,300 հազար բնակելի տուն։



Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին առավել զարգացման հասան սովետական գիտությունը, կուլտուրան և արվեստը։ Սովետական գիտության հետագա զարգացման գործում մեծագույն ավանդ հանդիսացան գիտության կորիֆեյ Ի. Վ. Ստալինի լեզվագիտության վերաբերյալ հանճարեղ աշխատությունները, որոնք խորը հեղաշրջում առաջ բերեցին սովետական և համաշխարհային լեզվագիտության մեջ։

Սովետական գիտության հաջողություններից մեկն ատոմային էներգիայի գաղտնիքին տիրապետելն է։ Սովետական գիտնականները թույլ չտվեցին ատոմային էներգիայի մոնոպոլիստներին երկար ժամանակ դոռոզանալ։ Սովետական գիտնականները հայրենական գիտությունը հարստացրին նոր գիտական հայտնագործություններով, որոնք ի պաս են դրված մեր հասարակության արտադրողական ուժերի զարգացմանը։

Այս տարի գիտության ու տեխնիկայի 1.610 գործիչների և արտադրության նորարարների շնորհվեցին Ստալինյան մրցանակներ։ Գիտահետազոտական ինստիտուտների թիվը 1949 թ., նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ, աճել է մեկ և կես

անգամ, իսկ նրանցում գրագետների թիվը համարյա կրկնապատկվել է։

Առավել զարգացման են հասել սովետական արվեստն ու գրականությունը, որոնք օրգանապես կապված են մեր կյանքի հետ։ Վերջին տարիներին սովետական գրողները ստեղծեցին մի շարք շնորհալի երկեր, որոնք հարստացրին մեր երկրի գրական գանձարանը։

Հետպատերազմյան Ստալինյան նոր հնգամյակի տարիներին մեր երկրում վերականգնված ու կառուցված են հազարավոր նոր դպրոցներ, գրադարաններ, ակումբներ, թատրոններ ու կինոներ։

Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում ընթացիկ տարում սովորում են ավելի քան 36 միլիոն մարդ, անցած 4 տարիների ընթացքում 3 միլիոն բանվորներ ավարտել են արհեստագործական ու երկաթուղային ուսումնարանները։ Նույն ժամանակաշրջանում արտադրության մեջ անհատական-բրիգադային և դասընթացային ուսուցման միջոցով իրենց որակը բարձրացրել են ավելի քան 24 միլիոն մարդ։ Տեղի է ունենում մեր երկրի բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակը մինչև ինժեներա-տեխնիկական ինտելիգենցիայի մա-



կարդակին բարձրացնելու պրոցեսը, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև հակադրությունների աստիճանական վերացման պրոցեսը։

«Հոկտեմբերյան ռևոլյուցիան,— ասում է ընկեր Ստալինը,— միայն տնտեսական ու հասարակական-քաղաքական հարաբերությունների բնագավառում կատարված ռևոլյուցիա չէ։ Նա միաժամանակ ռևոլյուցիա է բանվոր դասակարգի մտքերի մեջ, ռևոլյուցիա նրա իդեոլոգիայի մեջ»։

Մեր երկրի 864 բարձրագույն ուսումնական հաստատություններում այս տարի 316 հազար ուսանող ավելի կա, քան 1940 թվին, իսկ հայտնի է, որ 1940 թ. մեր երկրի բուհերում ավելի շատ մարդ էր սովորում, քան Եվրոպայի բոլոր երկրներում միասին վերցրած։ Սովետական իշխանության տարիներին մեր երկրում իրագործվեց կուլտուրական մեծագույն ռևոլյուցիա։ Սովետական Միությունը՝ համաշխարհային առաջավոր կուլտուրայի ու լուսավորության, առաջավոր գիտության, գրականության ու արվեստի կենտրոնն է։ Ներկայումս ԱՄՆ-ում հաշվվում են ավելի քան 10 միլիոն անգրագետներ։ Ընթացիկ տարվա փետրվարին ԱՄՆ-ի սոցիա-

լական ապահովագրության ֆեդերալ գործակալությունն իր զեկուցման մեջ խոստովանում էր, որ լուսավորության, առողջապահության և սոցիալական ապահովագրության բնագավառում աշխատավորների դրությունը կրում է ճգնաժամային բնույթ։

Կերպարանափոխվել է սովետական գյուղը, վերացվում է այն դարավոր տարբերությունը, որ կար գյուղի և քաղաքի միջև։ Կոլխոզային գյուղի համար վաղուց են դադարել նորություն լինելուց էլեկտրականությունն ու ռադիոն, թատրոնն ու կինոն, ակումբներն ու գրադարանները, բժշկական հիմնարկներն ու դպրոցները։ Միայն 1949 թվին էլեկտրիֆիկացվել է համարյա տաս անգամ ավելի շատ կոլխոզ, քան 1940 թվին։

Հայաստանի աշխատավորությունը, Սովետական Մեծ Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ ու օժանդակությամբ արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և գիտության բնագավառում ձեռք բերած նորանոր հաջողություններով է դիմավորում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձը և Հայաստանում Սովետական կար-



գերի հաստատման 30-ամյակը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների 1950 թվականի երկրորդ եռամսյակի արտադրանքի թողարկման ծավալը, 1949 թ. երկրորդ եռամսյակի համեմատությամբ, աճեց 26 տոկոսով։ Արդյունաբերական առանձին ձեռնարկություններ, ցեխեր, շատ բրիգադաներ ու հազարավոր բանվորներ ժամկետից շուտ կատարել են իրենց արտադրական պլանները։ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Ղափանի արդյունաբերական ձեռնարկություններում լայն աշխատանք է ծավալվել ինժեներ Կովալյովի մեթոդով նորարարների առաջավոր փորձի ուսումնասիրման, ընդհանրացման ու արմատավորման ուղղությամբ։

Երևանի Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանի ստախանովական նորարար Տ. Թումիկյանը մետաղի հատման տեխնոլոգիան կատարելագործելու և արագագործ մեթոդների համարձակ կիրառմամբ իր աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 5—6 անգամ։ Այդ նույն եղանակով «Ավտոդետալ» գործարանի ստախանովական նորարար Ժ. Շահինյանը մետաղի հղկման արտադրողականությունը բարձրացրել է երեք անգամ։ Էլեկտրամեքենաշինա-

կան գործարանի փաթաթող բանվորուհի Փ. Մկրտումյանը իր մշակած արագագործ մեթոդի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 50 տոկոսով։ Կարբիդի վառարանների ստախանովական բրիգադիր Ա. Մակարյանը աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է մոտ երկու անգամ, տալով էլեկտրաէներգիայի խնայողություն։ Աշխատելով Լիդիա Կորաբելնիկովայի օրինակով, Երևանի № 1 Կոշիկի ֆաբրիկայի ստախանովական բանվոր Գ. Նալչաջյանը պլանը կատարում է 200—300 տոկոսով։ Օրեցօր լայն ծավալ է ստանում սոցիալիստական մրցությունը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու համար։

Մեր ռեսպուբլիկայում 1948 թ. գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը, 1947 թ. համեմատությամբ, ավելացավ 6.900 հեկտարով։ Այս տարի է՛լ ավելի է ընդարձակվելու ցանքերի տարածությունը։ Միչուրինյան ագրոբիոլոգիայի նվաճումների արմատավորման հիման վրա կոլտնտեսային գյուղացիությունը զգալի չափով բարձրացրեց բերքատվությունը։ 1949 թվականին, 1940 թվականի համեմատությամբ,



հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը ավելացավ հեկտարից 2,5 ցենտներով, ծխախոտինը՝ 1,6 ցենտներով, բամբակինը՝ 6,9 ցենտներով։

Ռեսպուբլիկայի Հոկտեմբերյանի շրջանի կոլխոզնիկները անցյալ տարի բամբակի միջին բերքատվությունը հասցրին 26,5 ցենտների, իսկ շատ օղակներ մեկ հեկտարից ստացան 65—70 ցենտներ բամբակ։ Շրջանի բարձր բերքի 34 վարպետների շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում, իսկ հազարից ավելի առաջավորներ պարգևատրվեցին ՍՍՌՄ-ի շքանշաններով ու մեդալներով։ Միլիոնատեր կոլխոզների քանակը ռեսպուբլիկայում 1949 թվականին հասավ 112-ի։ Ռեսպուբլիկայի աշխատավորությունը հաջողությամբ է կենսագործում պարտիայի և կառավարության որոշումը՝ ռեսպուբլիկան սեփական հացով բավարարելու մասին։

Սովետական իշխանության տարիներին ծաղկեց ու բարգավաճեց հայ ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակը։ Հայաստանը վերածվեց համատարած գրագիտության երկրի։ Այժմ մեր ռեսպուբլիկան ծածկված է միջնակարգ և ոչ լրիվ միջնա-

կարգ դպրոցների, տեխնիկումների ու բարձ-
րագույն ուսումնական հաստատությունների,
ակումբների և գրադարանների, թատրոնների
ու կինոների խիտ ցանցով։ Ռեսպուբլիկայում
այժմ գործում է 14 ստացիոնար և 3 հեռա
կա բարձրագույն ուսումնական հաստատու-
թյուն։ Հայկական ՍՍՌ Գիտությունների ա-
կադեմիան իր 36 ինստիտուտներով և գիտա-
հետազոտական հիմնարկներով մշակել է
բազմաթիվ պրոբլեմներ, որոնք կապված են
մեր Հայրենիքի հզորացման և ամրա-
պընդման գործին։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյա-
կի տարիներին փոխել են իրենց տեսքը Հա-
յաստանի քաղաքներն ու գյուղերը։ Անցյալ
տարի Երևանի կոմունալ և բնակարանային
շինարարության վրա ծախսվել է ավելի քան
35 միլիոն ռուբլի, շահագործման է հանձ-
նըվել 11.000 քառ. մետր բնակելի տարա-
ծություն։

Ռեսպուբլիկայում գործող 52 գյուղական
էլեկտրակայանները իրենց էներգիայով լու-
սավորում են ոչ միայն կոլտնտեսների բնա-
կարանները, այլև էլեկտրիֆիկացնում են
գյուղատնտեսական բազմաթիվ աշխատա-
տար պրոցեսներ։



***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ
ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձը նշվում է
ամբողջ աշխարհում դեմոկրատիայի ու սո-
ցիալիզմի ուժերի հզոր վերելքի պայմաննե-
րում։ Վերջնականապես ընտրելով սոցիա-
լիզմի զարգացման ուղին, ժողովրդական
դեմոկրատիայի երկրները հետպատերազմ-
յան հինգ տարվա ընթացքում է՛լ ավելի ամ-
րապնդվեցին։ Ժողովրդական դեմոկրատիայի
երկրները, Սովետական Միության անշահա-
խնդիր օգնությամբ, կանգնել են տնտեսա-
կան զարգացման նոր վերելքի ուղու վրա։
Չեխոսլովակիայում ամբողջ արդյունաբերու-
թյան 98 տոկոսը կազմում է սոցիալիստա-
կան սեկտորը։ Երկրում հողային ռեֆորմի
հաջող իրականացումը և գյուղատնտեսու-
թյան մեքենայացումը հնարավորություններ
են ստեղծել մանր, քայքայված և քիչ եկա-
մըտաբեր տնտեսություններից խոշոր տըն-
տեսություններին անցնելու, որոնք հիմ-
նվում են կոլխոզային տնտեսության սկըզ-
բունքների վրա։ Այժմ երեք հազար չեխոսլո-

վակյան գյուղերում հիմնված են աշխա-
տանքային կոոպերատիվ տնտեսություններ։
Հաջող կերպով իրականացվում է 1949—1953
թ. թ. երկրի տնտեսության զարգացման հըն-
գամյա պլանը, որի համաձայն հնգամյակի
վերջում արդյունաբերության ընդհանուր ար-
տադրանքը կգերազանցի 1948 թվականի մա-
կարդակը 1,5 անգամ։ Բուռն վերելք է ապ-
րում Լեհաստանի ժողովրդական տնտեսու-
թյունը, որտեղ սոցիալիստական սեկտորը
կազմում է արդյունաբերության 96 տոկոսը։
Լեհաստանի աշխատավորության առջև խոշո-
րագույն հեռանկարներ է բաց անում տըն-
տեսության զարգացման վեցամյա պլանը։
Այդ պլանով 1955 թ. սոցիալիստական ար-
դյունաբերության արտադրանքը կգերազան-
ցի 1949 թվականի մակարդակը 2,5 անգամ։
Դեմոկրատական Բուլղարիան, հաջող կեր-
պով իրականացնելով երկամյա պլանը, այժմ
անցել է 1949—1953 թ. թ. տնտեսության
զարգացման հնգամյա պլանի իրագործմանը։
Այդ պլանի հաջող իրականացումը ռեսպուբ-
լիկայի ժողովրդական եկամուտը 1949 թվա-
կանի 47,3 միլիարդ լևից կհասցնի 95,5
միլիարդ լևի։ 1950 թվականի հունվարի 1-ից
մինչև 15-ը Բուլղարիայում ստեղծվեցին ա-
վելի քան 124 աշխատանքային կոոպերա-



տիվ հողագործական ընկերություններ։ Այժմ
երկրում աշխատում են 95 մեքենա-տրակ-
տորային կայաններ 6089 տրակտորներով։
Նույնպիսի տնտեսական և քաղաքական
վերելք են ապրում նաև ժողովրդա-դեմո-
կրատական մյուս երկրները։ Սոցիալական
խոր վերափոխությունները հնարավորու-
թյուն ստեղծեցին այդ երկրների էկոնոմի-
կան փոխադրելու պլանային սոցիալիստա-
կան զարգացման ուղու վրա։ Ժողովրդական
դեմոկրատիայի երկրներում վերացվել են
տնտեսական ճգնաժամերը և մասսաները
փրկվել են գործազրկության սարսափից։
Բազմամիլիոն Չինաստանը դեմոկրատա-
կան խաղաղասեր պետությունների ընտա-
նիքում տնտեսական ու կուլտուրական ծաղ-
կում է ապրում։ Չինաստանի ժողովրդական
կառավարության տնտեսական ծրագրով
նախատեսվում է քայքայված արդյունաբե-
րության արագ վերականգնումը, ծանր ին-
դուստրիայի զարգացումը և նրա տեսակա-
րար կշռի մեծացումը ժողովրդական տնտե-
սության մեջ՝ 10-ից հասցնելով 40 տոկոսի։
Գերմանական ժողովուրդը, ստեղծելով
Գերմանական դեմոկրատական ռեսպուբլի-
կա, կանգնել է դեմոկրատական զարգաց-

ման ուղու վրա։ Ռեսպուբլիկայում բուռն-
կերպով աճում է արդյունաբերության ար-
տադրանքը և այն այս տարի կհասնի 1936
թվականի մակարդակին։ Գերմանական դե-
մոկրատական ռեսպուբլիկայում բացակա-
յում է գործազրկությունը։ Արևմտյան Գեր-
մանիայում, որտեղ ամեն ինչ տեղի է ունե-
նում ամերիկա-անգլիական մոնոպոլիստ-
ների թելադրանքով, գործազուրկների թիվը
հասնում է մոտ երկու և կես միլիոն մարդու։
Արևմտյան Գերմանիայի էկոնոմիկայի լճա-
ցումն ու ամայացումը, որը դեմոկրատա-
կան Գերմանիայի ծաղկող առաջընթացի
հակապատկերն է, ակնառու կերպով ցույց
է տալիս երկու լագերների արմատական
հակադրությունը։

Վերջերս հրապարակվեց ՍՍՌՄ-ի, Ալբա-
նիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի,
Լեհաստանի, Ռումինիայի, Հունգարիայի և
Գերմանական դեմոկրատական ռեսպուբլի-
կայի արտաքին գործերի մինիստրների Հայ-
տարարությունը՝ Արևմտյան Գերմանիայի
վերառազմականացման վերաբերյալ երեք
տերությունների՝ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի
ու Ֆրանսիայի՝ Նյու-Յորքի խորհրդակցու-
թյան որոշումների առթիվ։ Երեք տերու-



թյունների Նյու-Յորքի խորհրդակցությունում
ընդունված սեպարատ որոշումները հանդի-
սանում են մի նոր կոպիտ խախտում այն
պարտավորությունների, որ ԱՄՆ-ի, Մեծ
Բրիտանիայի և Ֆրանսիայի կառավարու-
թյունները իրենց վրա են վերցրել Պոտսդա-
մի համաձայնագրով։ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտա-
նիայի և Ֆրանսիայի կառավարությունները
ձգտում են պայմաններ ստեղծել Արևմտյան
Գերմանիան բացահայտ կերպով ագրեսիվ
հյուսիս-ատլանտյան բլոկի մեջ մտցնելու
համար, այն վերջնականապես դարձնել
Եվրոպայում իրենց ագրեսիվ ռազմա-ստրա-
տեգիական պլանների գործիքը։ Արևմտյան
Գերմանիայի ռազմա-արդյունաբերական
պոտենցիալը վերականգնելու հետ միաժա-
մանակ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և Ֆրան-
սիայի կառավարությունները վերստեղծում
են գերմանական բանակը։ Վերածնվող
արևմտա-գերմանական բանակը բացա-
հայտորեն ի սպաս է դրվում ամերիկա-
անգլիական բլոկի ագրեսիվ նպատակներին։

Արտաքին գործերի ութ մինիստրների
Պրագայի խորհրդակցությունում մշակված
ծրագիրը, որը նշում է գերմանական հարցի
լուծման միակ ճիշտ ուղին, նորից վառ

կերպով վկայում է՝ Սովետական Միության,
ժողովրդական դեմոկրատիայի երկրների և
Գերմանական դեմոկրատական ռեսպուբլի-
կայի անշեղ ձգտումը դեպի խաղաղություն,
դեպի խաղաղ միջազգային համագործակ-
ցություն։ Այդ պատմական փաստաթղթի
մեջ արտահայտված են բոլոր խաղաղասեր
ժողովուրդների շահերը։

Ամերիկյան իմպերիալիստները տնտեսա-
կան ճգնաժամից փրկվելու ելքը որոնում են
ագրեսիայի և ռազմական ավանտյուրաների
մեջ։ Ռազմական ավանտյուրա ծավալելով
Կորեայում, Ամերիկայի Միացյալ Նահանգ-
ների կառավարությունը ագրեսիայի նախա-
պատրաստման քաղաքականությունից ան-
ցավ ուղղակի և ակտիվ ագրեսիայի։ Կորեա-
յում սկսված պատերազմից հետո ԱՄՆ-ի
ուղղակի ռազմական ծախսերը ընթացիկ
տարում ավելացել են և 15 միլիարդ դոլլա-
րից հասնում են 30 միլիարդ դոլլարի։

Ամերիկյան ինտերվենտները Կորեայում
դիմում են պատերազմ վարելու անմարդ-
կային, բարբարոսական եղանակների, հույս
ունենալով դաժանությամբ ընկճել կորեա-
կան հերոս ժողովրդի կամքը։

Սկսելով ագրեսիան Կորեայում, պրեզի-



դենտ Տրումենը հրաման տվեց ԱՄՆ-ի զին-
ված ուժերին միաժամանակ ռազմական օգ-
նություն ցույց տալու Գոմինդանի մնացորդ-
ներին Ֆորմոզայում, Բաո-Դայի մարիոնե-
տային կառավարությանը Վյետնամում և Կի-
րինոյի ռեակցիոն ռեժիմին Ֆիլիպիններում։
Սակայն Ասիայի ժողովուրդները ցանկանում
են ազատ լինել և պայքարում են իրենց ան-
կախության համար ընդդեմ բոլոր գաղութա-
րարների։

Անընդհատ աճող ազգային-ազատագրա-
կան շարժումը գաղութային ու կախյալ եր-
կրներում թուլացնում է ռեակցիայի լագե-
րը, խարխլում նրա հիմքերը, լուրջ հարված-
ներ հասցնում նրան։ Կոմունիստական ու
բանվորական պարտիաների ղեկավարու-
թյամբ ազգային-ազատագրական շարժման
ծավալումն ու ընդլայնումը, նրա հաջողու-
թյունները նշանակում են դեմոկրատիայի ու
սոցիալիզմի լուրջ հաջողություններ։

Սովետական Միության հետ մեկ լագերում
կանգնած են այնպիսի երկրներ, ինչպես Չի-
նական Ժողովրդական Ռեսպուբլիկան և ժո-
ղովրդական դեմոկրատիայի երկրները,
որոնց բնակչությունը կազմում է 800 մի-
լիոն մարդ, այսինքն ամբողջ երկրագնդի

ազգաբնակչության մեկ երրորդից ավելին։
Մյուս երկրների հարյուրավոր միլիոն մար-
դիկ նույնպես կողմնակից են կայուն խաղա-
ղության գործին, դեմ են իմպերիալիստա-
կան ագրեսիային։ Խաղաղասեր ժողովուրդ-
ները անարգանքի սյունին են գամում պա-
տերազմի հրձիգներին։ Խաղաղության կողմ-
նակիցները հաստատակամորեն պահանջում
են պատասխանատվության կանչել նրանց,
ովքեր մղում են նոր պատերազմի մարդատ-
յաց պրոպագանդան, ովքեր կոչ են անում
ոչնչացնել միլիոնավոր անմեղ մարդկանց։
Խաղաղության կողմնակիցների համաշխար-
հային կոնգրեսի մշտական Կոմիտեի կոչի
տակ, կոչ, որը պահանջում է արգելել ատո-
մային զենքը և պատերազմի հանցագործ
հայտարարել այն կառավարությանը, որն
առաջինը կգործադրի ագրեսիայի և մարդ-
կանց մասսայական ոչնչացման այդ զեն-
քը, իրենց ստորագրություններն են դրել
մոտ հինգ հարյուր միլիոն մարդ։

Խաղաղության համար մարտնչողների
առաջին շարքերում ընթանում է սովե-
տական ժողովուրդը։ Սովետական մար-
դիկ կոմունիստական հասարակության
կառուցման, սոցիալիստական տերու-
թյան հզորության ամրապնդման ուղղու-



թյամբ իրենց ստեղծարար աշխատանքով
մեծ ավանդ են մտցնում խաղաղության և
ժողովուրդների անվտանգության ամրապնդ-
ման գործում։

Իր գոյության առաջին օրվանից Սովետա-
կան տերությունը հետևողականորեն ու
հաստատակամորեն վարում է խաղաղու-
թյան և ժողովուրդների միջև բարեկամու-
թյան քաղաքականություն։ Սովետական ժո-
ղովուրդը ղեկավարվում է ընկեր Ստալինի
իմաստուն ցուցումներով։ «Մեր արտաքին
քաղաքականությունը պարզ է,— ասում է
ընկեր Ստալինը։ Նա խաղաղությունը պահ-
պանելու և բոլոր երկրների հետ առևտրական
հարաբերությունները ուժեղացնելու քաղա-
քականություն է։ ՍՍՌՄ-ն չի մտածում
սպառնալ որևէ մեկին և— առավել ևս-հար-
ձակվել որևէ մեկի վրա։ Մենք խաղաղության
կողմն ենք ու պաշտպանում ենք խաղաղու-
թյան գործը։ Բայց մենք չենք վախենում
սպառնալիքներից և պատրաստ ենք հար-
վածով պատասխանելու պատերազմի հրձիգ-
ների հարվածին»։

Սովետական Միությունը խաղաղության
դրոշակակիրն է ամբողջ աշխարհում։ Բոլոր
երկրների խաղաղասեր ժողովուրդները,

հանձին Սովետական Միության տեսնում են այն փարոսը, որը ցույց է տալիս բոլոր ժողովուրդների երջանկության ուղին։

Արտահայտելով սովետական ժողովրդի կամքը, խաղաղության կողմնակիցների Համամիութենական երկրորդ կոնֆերանսը լիովին պաշտպանեց խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի բյուրոյի Պրագայի սեսիայի որոշումները և Համաշխարհային երկրորդ կոնգրեսի իր ներկայացուցիչներին հանձնարարեց՝ հայտարարել, որ ամբողջ սովետական ժողովուրդը անշեղորեն նվիրված է խաղաղության գործին, պատրաստ է հաստատակամորեն ու վճռաբար, բոլոր երկրներում խաղաղության բոլոր կողմնակիցների հետ ձեռք-ձեռքի տված պայքարել պատերազմի սպառնալիքը կանխելու, կայուն ու երկարատև խաղաղությունն ապահովելու համար։

Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի հինգերորդ սեսիայում սովետական դելեգացիան կոչ է անում դատապարտել մի շարք երկրներում նոր պատերազմի օգտին մղվող պրոպագանդան և հանցավորներին ենթարկել պատասխա-



նատվության, արգելել ատոմային զենքը և մարդկանց մասսայական ոչնչացման բոլոր միջոցները, կոչ է անում կնքել խաղաղությունն ամրապնդելու պակտ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Չինաստանի և Սովետական Միության միջև, հինգ տերությունների զինված ուժերը 1950 թվականի ընթացքում կրճատել մեկ երրորդով։

Բոլոր երկրների խաղաղասեր ժողովուրդները է՛լ ավելի սերտորեն են համախմբում իրենց շարքերը ընդհանուր խաղաղության պատվար Սովետական Միության շուրջը, խաղաղության մեծ դրոշակակիր, ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։

Խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերն անպարտելի են։ Խաղաղության կողմնակիցների Համամիութենական երկրորդ կոնֆերանսում սովետական ժողովուրդը միահամուռ կերպով դատապարտեց ամերիկա-անգլիական իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունները և առաջ քաշեց պրակտիկ խնդիրներ երկարատև ու կայուն խաղաղությունն ապահովելու համար։ Խաղաղության կողմնակիցների հզոր բանակին դեպի հաղթանակ է տանում բոլոր ժողովուրդների իմաստուն առաջնորդ և ուսուցիչ,

խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինը:

Սովետական ողջ ժողովուրդը, համախմբված բոլշևիկների պարտիայի և նրա հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինի շուրջը, արտադրական խոշոր հաջողություններով ու խանդավառությամբ է նախապատրաստվում տեղական Սովետների ընտրություններին: Իշխանության տեղական օրգանների ընտրությունները է՛լ ավելի կամրապնդեն մեր ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովուրդների ստալինյան բարեկամությունը, սովետական ջերմ ու կենսատու հայրենասիրությունը:

Սովետական ժողովուրդը, բոլշևիկների պարտիայի և հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինի գլխավորությամբ, հաղթականորեն ընթանում է դեպի կոմունիզմի վերջնական հաղթանակը:



---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԸՆՏՐԱԿԱՆ ԿԱՄՊԱՆԻԱՅՈՒՄ

1950 թվականի դեկտեմբերի 24-ը Հայկական ՍՍՌ Աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների օրն է: Այդ օրը Սովետական Հայաստանի աշխատավորները միահամուռ կերպով կմոտենան ընտրական քվեատուփերին և մեկ մարդու պես ձայն կտան կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին:

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրական կամպանիայի օրերին չափազանց մեծ է բոլշևիկյան ագիտատորների անելիքները: Նրանք, ամենից առաջ, պարտավոր են աշխատավորական լայն մասսաներին հասցնել աշխարհում ամենադեմոկրատական կոնստիտուցիայի՝ Ստալինյան Կոնստիտուցիայի սկզբունքները:

Սովետական իշխանությունը իսկական ժողովրդական իշխանություն է, ՍՍՌՄ-ի ընտրական սիստեմը ամենադեմոկրատականն է ամբողջ աշխարհում։ Սովետական քաղաքացիների բոլոր իրավունքներն ու պարտականությունները փայլուն կերպով շարադրված են Ստալինյան Կոնստիտուցիայում։ ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիան հաղթանակած սոցիալիզմի երկրի փառավոր փաստաթղթերից է, նրանում պարզ ու սեղմ կերպով պատմվում է աշխարհում առաջին սոցիալիստական պետության ձեռք բերած հաղթանակների մասին, մեր երկրի ամենահետևողական դեմոկրատիայի մասին։ ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիան բարոյական օգնություն և իրական օժանդակություն է հանդիսանում կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաներին և լուսավորում է նրանց ազատագրության ճանապարհը։

Ընկեր Ի. Վ. Ստալինը 1936 թվի նոյեմբերի 25-ին, Սովետների 8-րդ Համամիութենական Արտակարգ համագումարում «ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին» տված պատմական զեկուցման մեջ նշել է, որ ՍՍՌՄ Կոնստիտուցիան, իբրև մեր պայքարի արդյունք, ամրապնդում է



հավատը դեպի մեր ուժերը և մոբիլիզացնում նոր պայքարի՝ կոմունիզմի նորանոր հաղթություններ նվաճելու համար։

Բոլշևիկյան ագիտատորները, ընտրողներին բացատրելով ՍՍՌՄ Կոնստիտուցիայի հիմնական սկզբունքները, պետք է հանգամանորեն ցույց տան, թե ինչպիսի պայմաններում են ընթանալու տեղական Սովետների առաջիկա ընտրությունները։ Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրական կամպանիան սովետական ժողովուրդը անց է կացնում տնտեսական-քաղաքական նոր հուժկու վերելքի պայմաններում։ Սովետական հայրենասերները հաջողությամբ իրականացնում են հետպատերազմյան նոր հնգամյակի հոյակապ ծրագիրը, ձեռնամուխ են եղել կոմունիզմի մեծ կառուցումներին։ Կույբիշևյան և Ստալինգրադյան էլեկտրակայաններ Վոլգայի վրա, Գըլխավոր Թուրքմենական ջրանցք, Կախովկայի էլեկտրակայանը Դնեպրի վրա, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքներ— այս բոլորը նորանոր փայլուն հաղթանակներ են նշանավորում կոմունիզմի կառուցման մեծ ճանապարհին։ Կոմունիզմի հոյակապ կառուցումները բոլշևիկյան

պարտիայի Սովետական կառավարության և անձամբ մեծ Ստալինի կողմից սովետական մարդկանց նկատմամբ դրսևորվող հոգատարության պայծառ արտահայտությունն է։ Հարկավոր է օգտագործել նախորդ ընտրությունների ժամանակ ձեռք բերած քաղաքական-մասսայական աշխատանքի բոլոր փորձված և իրենց արդարացրած ձևերն ու մեթոդները՝ զեկուցումներ, զրույցներ, դասախոսություններ, թերթերի ընթերցանություններ, աշխատավորների միտինգներ և ժողովներ, էքսկուրսիաներ, ագիտբրիգադաների ելույթներ։ Անհրաժեշտ է զեկուցումներ և զրույցներ կազմակերպել՝ «ՍՍՌՄ Կոնստիտուցիան աշխարհում ամենադեմոկրատական Կոնստիտուցիան է», «Լենինը և Ստալինը սովետական դեմոկրատիայի մասին», «Սովետական իշխանության պետական օրգանները», «Ընտրությունների կանոնադրությունը», «Լենին-Ստալինի պարտիան մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է», «Կոմունիզմի մեծ կառուցումները», «Սովետական Միությունը խաղաղության դրոշակակիրն է ամբողջ աշխարհում», «Արտադրական նորանոր հաջողություններով դի-



մավորենք ընտրությունները», «ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները» և այլ թեմաներով։

Քաղաքական ագիտացիան պետք է իսպաս դրվի արտադրական պլանների ժամանակին կատարման ու գերակատարման գործին։ Ընտրական կամպանիան նոր խթան է հանդիսանում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձի և Սովետական Հայաստանի 30-ամյակի պատվին սկսված սոցիալիստական մրցությունը է՛լ ավելի ծավալելու համար։ Ագիտատորները պետք է իրենց քրտնաջան աշխատանքով նպաստեն արտադրական պլանների կատարման, առաջավորների աշխատանքային փորձի մասսայականացման և արմատավորման գործին։ Նրանք պարտավոր են ամենուրեք անձնական օրինակ տալ։

Ընտրական կամպանիայի հաջողությունները պայմանավորված են նաև թաղամասային բնակչության մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքով։ Այս օրերին հարկավոր է նոր թափ հաղորդել թաղամասերում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքին, բոլոր ընտրողնե-

րին հասցնել ընտրությունների կանոնավորությունը։

Ագիտատորների խնդիրն է՝ վեր հանել Սովետական դեմոկրատիայի առավելությունները, ցույց տալ, որ կապիտալիստական երկրներում, առաջին հերթին Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում և այլ երկրներում չկա դեմոկրատիա, որ «դեմոկրատիան կապիտալիստական երկրներում, որտեղ կան անտագոնիստական դասակարգեր, վերջին հաշվով դեմոկրատիա է ուժեղների համար, դեմոկրատիա ունևոր փոքրամասնության համար» (Ի. Ստալին)։

Սովետական Միությունը խաղաղության դրոշակակիրն է ամբողջ աշխարհում։ Ագիտատորները պետք է ընտրողներին հանգամանորեն բացատրեն Սովետական Միության արտաքին իմաստուն քաղաքականության հարցերը, ցույց տան Սովետական Միության առաջատար դերը դեմոկրատիայի, խաղաղության համար մղվող պայքարում։

Լայն թափ բոլշևիկյան ագիտացիային։





# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԵՐԿՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

Մոսկվայում, Միությունների տան Սյունազարդ դահլիճում, 1950 թվականի հոկտեմբերի 16—18 տեղի ունեցավ խաղաղության կողմնակիցների Համամիութենական երկրորդ կոնֆերանսը։

Խաղաղության կողմնակիցների Համամիութենական երկրորդ կոնֆերանսի օրակարգում դրված էին հետևյալ հարցերը՝ 1. Սովետական ժողովուրդը խաղաղության համար, ընդդեմ նոր պատերազմի հրձիգների մղվող պայքարում. 2. Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսի դելեգատների ընտրությունները. 3. Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի ընտրությունները։

Օրակարգի առաջին հարցի առթիվ տված

իր զեկուցման մեջ գրող Ն. Ս. Տիխոնովն ասաց. «Խաղաղության համար մղվող պայքարն օրեցօր ուժեղանում է։ Բոլոր ժողովուրդների հայացքն ուղղված է Սովետական Միությանը և նրա մեծագույն առաջնորդին՝ խաղաղության առաջին դրոշակակրին, խաղաղության, ժողովուրդների անկախության, ժողովուրդների բարեկամության համար մղվող պայքարի արդար գործի նկատմամբ երկրագնդի բոլոր հասարակ մարդկանց սրտերում անհողդողդ հավատ վառած հանճարեղ առաջնորդ, մեր բարեկամ, մեր հարազատ Ստալինին, որն այնքան շատ բան է արել ամբողջ աշխարհի ժողովուրդների երջանկության համար»։

Իր գոյության առաջին իսկ օրից Սովետական պետությունը միշտ էլ գտնվել և գտնվում է խաղաղության համար, պատերազմի սպառնալիքի դեմ մղվող պայքարի առաջավոր դիրքերում։ ՍՍՌՄ-ի վարած հաստատակամ, հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը օրգանապես բխում է Սովետական Սոցիալիստական պետության բուն իսկ բնույթից։

Ահա թե ինչու մեր երկրի ամբողջ հասակավոր բնակչությունը Ստոկհոլմի կոչի տակ



ստորագրություններ հավաքելու կամպա-
նիայի օրերին միահամուռ կերպով ցու-
նվիրվածությունը
ցադրեց իր անսահման
խաղաղության գործին, արտահայտեց պա-
տերազմի ամերիկա-անգլիական հրձիգների
բոլոր ոտնձգություններից խաղաղությունը
պաշտպանելու իր անհողդողդ պատրաստա-
կամությունը, ցուցադրեց իր կուռ համա-
խմբվածությունը բոլշևիկյան պարտիայի
շուրջը, իր անսահման նվիրվածությունը
խաղաղության մեծ դրոշակակիր, բոլոր ժո-
ղովուրդների հանճարեղ առաջնորդ սիրելի
Ստալինին։

Մեր երկրում Ստոկհոլմի կոչի տակ ստո-
րագրել են 115 միլիոն 514 հազար սովե-
տական քաղաքացիներ։

Խաղաղության կողմնակիցների Համա-
միութենական կոնֆերանսի օրերին ամբողջ
աշխարհով մեկ Մոսկվայից հնչեց խաղա-
ղության մեծ գործի արթուն պահապան սո-
վետական ժողովրդի հզոր ձայնը։

Իրենց բոլոր ուժերն ու կարողություննե-
րը նվիրելով խաղաղ ստեղծագործ աշխա-
տանքին, ՍՍՌՄ-ի ժողովուրդները պաշտ-
պանում են խաղաղության գործը, վճռա-
կանորեն ու համարձակ կերպով մերկաց-

նում են նոր պատերազմի իմպերիալիստական հրձիգների բոլոր ու ամեն տեսակի ոտնձգությունները։

Այն փաստը, որ վերջին ժամանակաշրջանում մեր երկրում լայն թափ ու ծավալ է ստացել տնտեսական ու կուլտուրական շինարարությունը, ինքնին բացառիկ համոզչությամբ խոսում է սովետական ժողովրդի խաղաղասիրական ձգտումների մասին։

Սովետական Միության օրինակը խաղաղ ստեղծագործական աշխատանքի է ոգեշընչում նոր կյանքի ուղին ոտք դրած ժողովուրդներին։ Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկայի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հարյուր միլիոնավոր աշխատավորները ընթանում են Սովետական Միության հետ առաջին շարքերում՝ ամբողջ աշխարհում խաղաղություն հաստատելու համար մղվող պայքարում։

«Ամբողջ աշխարհը գիտե, որ Սովետական Միությունը հաստատակամորեն խաղաղության է ձգտում՝ բոլոր պետությունների հետ, անդուլ կերպով պայքարում է խաղաղության համար, ընդդեմ պատերազմի հրձիգների։ Լենինյան-ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականությունը, խա-



ղաղության և ժողովուրդների համագործակցության համար ՍՍՌՄ-ի կողմից մըղվող հետևողական ու վճռական պայքարը մեր երկրի համար ապահովեցին հարյուր միլիոնավոր մարդկանց համակրանքն ու պաշտպանությունը՝ բոլոր երկրներում։ Սովետական Միությունը, մեծ Ստալինի ղեկավարությամբ, աշխատավորների ավանգարդն է՝ ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու համար նրանց մղած պայքարում» («Պրավդա»)։

Կորեայում պատերազմ հրահրած ամերիկյան ագրեսորների արյունռուշտ չարագործությունները զայրույթ ու նողկանք են առաջ բերել բոլոր ազատասեր ժողովուրդների մեջ։ Ամերիկյան և անգլիական կառավարող շրջանների պատերազմական ավանտյուրաներին խաղաղության կողմնակիցները պատասխանում են է՛լ ավելի համախմբելով իրենց շարքերը, է՛լ ավելի բարձրացնելով զգոնությունը, ակտիվացնելով կայուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար իրենց պայքարը։

Հայ բանաստեղծ Ն. Զարյանը Կոնֆերանսի իր ելույթում ասաց. Թյուրքական բարբարոսները առաջին համաշխարհային պա-

տերազմում երկու միլիոն հայերի բնաջըն-
ջեցին լոկ այն բանի համար, որ նրանք
ձգտում էին վերամիավորվել իրենց ռուսա-
հայ եղբայրների հետ, ձգտում էին ազգա-
յին ու պետական անկախության։ Այժմ ա-
վելի հրեշավոր չափերով «Նոր աշխարհի»
բարբարոսները ոչնչացնում են Կորեայի
ժողովրդին, սպանում են միլիոնավոր ան-
մեղ մարդկանց միայն այն պատճառով, որ
կորեական քաջարի ժողովուրդը ձգտում է
կազմել իր միացյալ անկախ պետությունը։
Արտահայտելով սովետական ժողովրդի
կամքը, Խաղաղության կողմնակիցների Հա-
մամիութենական երկրորդ կոնֆերանսը ամ-
բողջովին պաշտպանեց Խաղաղության
կողմնակիցների Համաշխարհային կոնգրե-
սի Մշտական կոմիտեի բյուրոյի՝ Պրագայի
սեսիայի որոշումները։ Կոնֆերանսը Համաշ-
խարհային երկրորդ կոնգրեսի իր ներկայա-
ցուցիչներին նակազ տվեց հայտարարել, որ
ամբողջ սովետական ժողովուրդը անշեղո-
րեն նվիրված է խաղաղության գործին և
վճռաբար կպայքարի պատերազմի սպառ-
նալիքը կանխելու, կայուն և երկարատև
խաղաղություն հաստատելու համար, որ
սովետական ժողովուրդը խաղաղության



բոլոր մարտիկների հետ միասին կպահանջի
կրճատել սպառազինություն բոլոր տեսակ-
ները և իսկական վերահսկողություն հաս-
տատել ատոմային զենքն արգելելու նկատ-
մամբ, կպահանջի ամենախիստ կերպով
արգելել նոր պատերազմի պրոպագանդան և
պատասխանատվության ենթարկել այդ պրո-
պագանդայի մեջ մեղավորներին։ Կոնգրե-
սում զայրագին բողոք հայտնել ընդդեմ ա-
մերիկյան զինված ագրեսիայի Կորեայում,
կոչ անել աշխարհի բոլոր ազնիվ մարդ-
կանց՝ պահանջել անհապաղ դադարեցնելու
պատերազմը Կորեայում և դուրս բերելու
բոլոր օտարերկրյա զորքերը։
Խաղաղության համար մղվող մեծ պայ-
քարում ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը
իր հույսը կապում է ընկեր Ստալինի անվան
հետ։

Կոնֆերանսի դելեգատները բուռն խան-
դավառությամբ ընդունեցին ողջույն՝ ուղղ-
ված աշխատավորների մեծ առաջնորդ ընկեր
Ստալինին։ Միությունների տան Սյունա-
զարդ դահլիճում մի հիասքանչ տեսարան էր
այն պահին, երբ ընդունվեց այդ ողջույնը։
Արտահայտելով Սովետական Միության
բոլոր աշխատավորների խոհերն ու զգաց-

մունքները, խաղաղության կողմնակիցների
Համամիութենական երկրորդ կոնֆերանսը
ընկեր Ստալինին ուղարկած իր ողջույնի
մեջ գրել է.
«Խաղաղությունը կհաղթի պատերազմին,
որովհետև խաղաղության շարժումը անհաղ-
թահարելի է, այն օրեցօր աճում և ամրա-
պընդվում է.
Խաղաղությունը կհաղթի պատերազմին,
որովհետև այդ շարժումը գլխավորում է սո-
վետական անսասան ժողովուրդը, որը խա-
ղաղության պատվարն է ամբողջ աշխար-
հում:
Խաղաղությունը կհաղթի պատերազմին,
որովհետև այդ պայքարի դրոշը Ստալինն է:
Կեցցե՜ մեզ հաղթանակից հաղթանակ
տանող բոլշևիկների մեծ պարտիան:
Կեցցե՜ ամբողջ աշխարհում խաղաղու-
թյան համար ժողովուրդների կողմից մղ-
վող պայքարի ոգեշնչող ու կազմակերպիչ,
մեր թանկագին սիրելի ընկեր Ստալինը»:



---

# ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ ՈՒ ՀԶՈՐԱՆՈՒՄ Է ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ

Հրապարակվել է ՍՍՌՄ Մինիստրների
Սովետին կից Կենտրոնական Վիճակագրա-
կան Վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ
ժողովրդական տնտեսության զարգացման
1950 թվականի երրորդ եռամսյակի պետա-
կան պլանի կատարման արդյունքների մա-
սին: Դա սովետական հզոր պետության տա-
րած նոր հաղթանակների հանրագումարն է,
սոցիալիզմի երկրի ժողովրդական տնտե-
սության, կուլտուրայի, աշխատավորների
բարեկեցության անընդհատ ծաղկման ու
բարգավաճման մի նոր ապացույցը: Լենինի-
Ստալինի պարտիայի ղեկավարությամբ մեր
երկրի ժողովրդական տնտեսությունն ըն-
թանում է հուժկու վերելքի ուղիով:

Հաղորդագրության մեջ ասված է, որ
1950 թվականի երրորդ եռամսյակի պլա-
նը, ամբողջությամբ վերցրած, արդյունաբե-
րության համախառն արտադրանքի գծով

կատարվել է 103 տոկոսով։ 1950 թվականի 9 ամիսների արդյունաբերական արտադրության պլանը նույնպես գերակատարվել է։

1950 թվականի 3-րդ եռամսյակում, 1949 թվի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մեր երկրի արդյունաբերությունը ավել է արտադրել՝ չուգուն 18 տոկոսով, պողպատ 17, ածուխ 11, նավթ 12, բենզին 20, էլեկտրաէներգիա 15, մագիստրալային էլեկտրաքարշեր 42, բեռնատար ավտոմոբիլներ 30, մարդատար ավտոմոբիլներ 44, ավտոբուսներ 38, էքսկավատորներ 22, շոգետուրբիններ 62, մանող մեքենաներ 17, տրակտորներ 39, հացահատիկային կոմբայններ 49, տրակտորային գութաններ 50, տրակտորային շարքացաններ 79, տրակտորային կուլտիվատորներ 74, հանքային պարարտանյութեր 26, թուղթ 21, ցեմենտ 24, հեծանիվներ 33, ռադիոընդունիչներ 27, կարի մեքենաներ 26, ժամացույցներ 33, ֆոտոապարատներ 93, փուշեղեն գործվածքներ 32, բրդեղեն գործվածքներ 10, մետաքսեղեն գործվածքներ 21, կաշվե-կոշկեղեն 25, ռետինե-կոշկեղեն 14, գուլպաներ 27, միս 53, կենդանական յուղ 5, բուսական յուղ 40, շաքար 37, հրուշակեղեն 30, օճառ



39, խաղողի գինի 87, շամպայն 48, գարեջուր 37 տոկոսով ավելի և այլն։

ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականի 9 ամիսների ընթացքում անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է 22 տոկոսով, իսկ 1950 թվականի երրորդ եռամսյակում, 1949 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ, 24 տոկոսով։

1950 թվականի երրորդ եռամսյակում արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը, համադրելի գներով, իջել է 7 տոկոսով։

Միանգամայն հակառակ պատկեր է ներկայացնում կապիտալիստական երկրների տնտեսության ներկա վիճակը։ Կապիտալիստական երկրների տնտեսությունը այժմ գտնվում է անլուծելի հակասությունների մեջ։ Եթե Սովետական Միության մեջ վերջին 20 տարիների ընթացքում արդյունաբերական արտադրությունն ավելացել է 9 անգամ, ապա կապիտալիստական Եվրոպայի արդյունաբերական արտադրությունը, ամբողջովին վերցրած, այդ իսկ 20 տարիների ընթացքում մնացել է նույն մակարդակի վրա։ ԱՄՆ-ում 1949 թվի հուլիսին արդյու-

նաբերական արտադրությունը կազմում էր միայն 65 տոկոսն այն ամենաբարձր մակարդակի, որին հասել էր այդ երկրի արդյունաբերությունը պատերազմի տարիներին, և 18 տոկոսով ցածր էր, քան 1948 թվի նոյեմբերին։

Լուրջ հաջողությունների է հասել մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1950 թվականին ստացվել է անցյալ տարվա բերքի մակարդակով, չնայած, որ Հյուսիսային Կովկասի մի շարք շրջաններում և երկրի մի քանի այլ շրջաններում եղանակներն անբարենպաստ էին հացահատիկային կուլտուրաների համար։

Աճում և ամրապնդվում է գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազան։ 1950 թվականի 9 ամիսների ընթացքում գյուղատնտեսությունն ստացել է 130 հազար տրակտոր, վերածած 15 ուժանիի, 33 հազար կոմբայն, որոնցից 16 հազարը՝ ինքնագնաց, 66 հազար բեռնատար ավտոմեքենա, մեկ միլիոն 300 հազար կցվող գործիքներ և այլ գյուղատնտեսական մեքենաներ։

Կոլխոզներում գյուղատնտեսական աշ-



խատանքների մեքենայացման մակարդակը 1950 թվականին զգալիորեն բարձրացել է։ 1950 թվականի անցած ժամանակամիջոցում մեքենատրակտորային կայանները կոլխոզներում 18 տոկոսով ավելի գյուղատնտեսական աշխատանքներ են կատարել, քան 1949 թվականի այդ նույն ժամանակամիջոցում։

Հանրային անասունների գլխաքանակը կոլխոզներում 1949 թվականի հոկտեմբերի 1-ից մինչ 1950 թվականի հոկտեմբերի 1-ն ավելացել է խոշոր եղջերավոր անասուններինը՝ 11 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 19 տոկոսով, խոզերի գլխաքանակը 41 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 15 տոկոսով և ձիերինը 17 տոկոսով։ Թռչունների գլխաքանակը կոլխոզներում ավելացել է 63 տոկոսով։

Երկաթուղային տրանսպորտում օրական միջին բեռնման ընդհանուր պլանը 1950 թվականի երրորդ եռամսյակում կատարվել է 102 տոկոսով։ Երկաթուղիներում բոլոր բեռների օրական միջին բեռնումը 1950 թվականի երրորդ եռամսյակում, 1949 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ, աճել է 13 տոկոսով։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, զգալիորեն աճել են։ 1950 թվականի 9 ամիսների ընթացքում բոլոր կապիտալ աշխատանքների ծավալը 1949 թ. 9 ամսվա դիմաց կազմել է 125 տոկոս։

Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրության հակիրճ թվերը ցայտուն կերպով ցույց են տալիս, թե ինչպես գնալով ավելի ու ավելի է աճում սովետական մարդկանց բարեկեցությունը, գնալով ավելի լայն ծավալ է ստանում կուլտուրական շինարարությունը, լավանում է առողջապահության գործի դրվածքը, ծավալվում է սովետական առևտուրը։

1950 թվականի երրորդ եռամսյակում տեղի էր ունենում սովետական առևտրի հետագա ծավալումը։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը 1950 թվականի երրորդ եռամսյակում, 1949 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ, համադրելի գներով ավելացել է 33 տոկոսով։

Պարենային ապրանքների վաճառքը 1950 թվականի երրորդ եռամսյակում, 1949 թվա-



կանի երրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 30 տոկոսով։

1950 թվականի երրորդ եռամսյակում վաճառվել է 37 տոկոսով ավելի արդյունաբերական ապրանք, քան 1949 թվականի երրորդ եռամսյակում։

1950 թվականին բարձրագույն ուսումնական հաստատություններն ու տեխնիկումները, ներառյալ հեռակա հաստատությունները, ավարտել են 500 հազար երիտասարդ մասնագետներ։

Ընթացիկ ուսումնական տարում բարձրագույն ուսումնական հաստատությունները և տեխնիկումները, ներառյալ հեռակա հաստատությունները, նոր ընդունել են մոտ 800 հազար սովորողներ։

1949 թվականի ամառվա ընթացքում 5 միլիոն երեխաներ և անչափահասներ հանգստացել են պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում, էքսկուրսիոն-տուրիստական բազաներում, կազմակերպված ձևով ամբողջ ամառվա ժամանակամիջոցում եղել են ամառանոցային վայրերում՝ մանկապարտեզների, մանկատներ և մանկամսուրների հետ միասին։

# ԹԵՄԱՆԵՐ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Ստալինյան Կոնստիտուցիան— հաղթանակած սոցիալիզմի կոնստիտուցիա է։

2. Ստալինյան Կոնստիտուցիան ամենադեմոկրատական կոնստիտուցիան է աշխարհում։

3. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի սկզբունքները։

4. Սովետական Միությունը որպես բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն։

5. Աշխատավորների դեպուտատների Սովետները ՍՍՌՄ-ի քաղաքական հիմքն են։

6. Տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը ՍՍՌՄ-ի տնտեսական հիմքն են։

7. Սովետական ընտրական սիստեմը ամենադեմոկրատական սիստեմն է աշխարհում։

8. ՍՍՌՄ պետական իշխանության տեղական օրգանները։

9. Բուրժուական դեմոկրատիայի և սովետական դեմոկրատիայի արմատական տարբերությունը։



10. ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները։

11. Սոցիալիստական Հայրենիքի պաշտպանությունը Սովետական Միության յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է։

12. Սովետական Հայաստանը ՍՍՌՄ ժողովուրդների միասնական ընտանիքում։

13. Սովետական Հայաստանի հաջողությունները հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում։

14. Կոմունիզմի մեծ կառուցումները (Կույբիշևյան և Ստալինգրադյան էլեկտրակայաններ, Թուրքմենական Գլխավոր ջրանցք և այլն)։

15. ՍՍՌՄ աշխատավորների նյութական բարեկեցության անընդհատ բարձրացումը հանդիսանում է սոցիալիստական հասարակարգի զարգացման օրենքը։

16. Բոլշևիկյան պարտիայի քաղաքականությունը սովետական կարգերի կենսական հիմքն է։

17. Սովետական Միությունը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մեծ դրոշակակիրն է։



## ՊԼԱՆ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ «ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ» ԹԵՄԱՅԻ ԶՐՈՒՅՑԻ ՀԱՄԱՐ

1. Ստալինյան Կոնստիտուցիան ՍՍՌՄ-ի հիմնա-
կան օրենքն է: Ստալինյան Կոնստիտուցիան ամենա-
դեմոկրատական կոնստիտուցիան է աշխարհում:
Ստալինյան Կոնստիտուցիայի հիմնական առանձնա-
հատկությունները: Ընկեր Ստալինը հաղթանակած
սոցիալիզմի Կոնստիտուցիայի ստեղծողն է:

2. ՍՍՌՄ-ի ընտրական օրենքն ամենադեմոկրա-
տական օրենքն է աշխարհում: Սովետական դեմոկ-
րատիայի առավելությունները բուրժուական «դե-
մոկրատիայի» նկատմամբ: Սովետական ընտրական
սիստեմը՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրա-
կան իրավունք, գաղտնի քվեարկությամբ:

3. ՍՍՌՄ-ի քաղաքացիների հիմնական իրավունք-
ները— աշխատանքի իրավունք, հանգստի իրավունք,
ծերության և ժամանակավորապես աշխատունակու-
թյունը կորցնելու դեպքում նյութական ապահովության
իրավունք, կրթության իրավունք: Կանանց և :ողա-
մարդկանց իրավահավասարություն և այլն:

4. ՍՍՌՄ-ի քաղաքացիների հիմնական պարտա-
կանությունները: Սոցիալիստական սեփականությու-
նը, որպես սովետական կարգի սրբազան և անձեռն-



մխելի հիմք: Ընդհանուր զինվորական պարտականու-
թյունն օրենք է հանդիսանում: Սոցիալիստական
Հայրենիքի պաշտպանությունը ՍՍՌՄ-ի յուրաքան-
չյուր քաղաքացու սրբազան պարտականությունն է:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի
մասին:

Ի. Վ. Ստալինի ճառերը Մոսկվա քաղաքի Ստալին-
յան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական
ժողովներում, 1937 թվի դեկտեմբերի 11-ին և 1946
թվի փետրվարի 9-ին: Հայպետհրատ, 1950 թ.:

ՍՍՌՄ Կոնստիտուցիան:

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան:

ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց:
(էջ՝ 467—473, 479—482). Հայպետհրատ. 1946 թ.:

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատը լույս է ընծայել.

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր, 17-րդ հատոր:

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր, 18-րդ հատոր:

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ագրարային հարցը և «Մարքսի քննադատները»: *230 էջ, գինը 2 ռ. 10 կոպ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Զեկուցում 1905 թվականի ռևոլյուցիայի մասին: *28 էջ, գինը 25 կոպ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին: *10 էջ, գինը 10 կոպ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Պետության մասին: *29 էջ, գինը 30 կոպ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկրորդ ինտերնացիոնալի կրախը: *79 էջ, գինը 80 կոպ.:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին: *54 էջ, գինը 55 կոպ.:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, *1946 թվի փետրվարի 9-ին: 23 էջ, գինը 20 կոպ.:*

ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների: *29 էջ, գինը 55 կոպ.:*

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբ-



լիկայի Կոնստիտուցիա (հիմնական օրենք): *20 էջ, գինը 40 կոպ.:*

Կ. Ա. ՏԻՄԻՐՅԱԶԵՎ.— Դարվինի տեսության համառոտ ուրվագիծը: *207 էջ, գինը 3 ռ. 30 կոպ.:*

Ն. ԿՈՒՉԻՆ.— Ինչպես անցկացնել պարապմունքները քաղդպրոցում: *86 էջ, գինը 1 ռ. 10 կոպ.:*

Ս. Տ. ՄՈԿԱՑՅԱՆ.— Աշխատանքային պրոցեսների էլեկտրիֆիկացումը կոլխոզներում: *81 էջ, գինը 1 ռ. 40 կոպ.:*

Գյուղական ֆիզկուլտուրնիկի ուղեցույց: *206 էջ, գինը 4 ռ. 40 կոպ.:*

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ